Տէր եւ Տիկին Կարապետ Ծառուկեան , Տէր եւ Տիկին Յովհաննէս Սէֆէրեան , Տիկին Փօլ Սարգիսեան եւ զաւակը , Տէր եւ Տիկին Ալեքսանտր Պասմաճեան , Մարի - Քրիսթին Ծառուկեան , Տէր եւ Տիկ. Արշակ Ծառուկեան եւ զաւակները (Պուէնոս - այրէս) , Տէր եւ Տիկին Սիրական Ծառուկեան եւ զաւակները (Գահիրէ) , Տէր եւ Տիկին Արման Սէֆէրեան եւ զաւակը , Տէր եւ Տիկին Արթիւր Սինանեան եւ զաւակը , Տէր եւ Տիկին Լուի Կերու , ինչպէս նաեւ Արթինեան , Էմմիեան , Թոփալեան եւ Փորխալեան ընտանիքները սրտի անհուն կսկիծով կը ծանուցանեն իրենց զաւկին , թոռան , եղբօր , մօրեղբօր , սանին եւ ազգականին՝

ԺԱՆ-ՔԼՕՏ ԳԱՌՆԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆԻ

վաղաժամ մահը , որ տեղի ունեցաւ Հոկտեմբեր 5ին , 20 տարեկանին :

Պենիւ Թամու (Ալժերիա) :

Տարաբախտ զինուորը զինուորական մետալ եւ զինուորական արժանիքի խաչ ունէր (փալմով) :

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այսօր Ուրբաթ ժամը 14ին , Քաթր-Ֆաժի Սէն Ժողէֆ եկեղեցին (182, Րիւ տիւ Մենիլ) : Ներկայ կ'ըլլայ Կաթ. պատուէրակ Սերովբէ Եպիսկ. Մանուկեան :

Թաղումը կը կատարուի Անիէռի հին գերեզմանատունը , ընտանեկան դամբարանին մէջ :

Կը խնդրուի միայն ճերմակ ծաղիկ բերել :

Հաւաքուիլ եկեղեցին :

Հաղորդ. միջոցներ.— Օթօպիւս 140 , Փորթ Քլիշիէն կամ 165 Փորթ Շամփէրէէն , իջնել՝ Րիւ Կռամ :

Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել :

×

Հ. Յ. Դ. Արամ ենթակոմիտէն սրտի խոր կսկիծով կ'ողբայ

ԺԱՆ ԾԱՌՈՒԿԵԱՆԻ

վաղահաս մահը եւ ցաւակցութիւնները կը յայտնէ ողբացեալ երիտասարդին ընտանիքին :

×

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Կեդր. վարչութիւնը կ'ողբայ իր ընկերներէն՝

ԺԱՆ ԾԱՌՈՒԿԵԱՆԻ

վաղահաս մահը , որ տեղի ունեցաւ Ալժերիոյ ճակատը եւ ցաւակցութիւն կը յայտնէ տարաբախտ երիտասարդին ընտանիքին :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այս Կիրակի ժամը 10ին , Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ տեղի կ'ունենայ հոգեհանգստեան Ս. պատարագ եւ պաշտօն , Մոնմորանսիի եւ Անտիյիի հանգստեան տուներուն մէջ մեռած պատսպարեալներու հոգւոյն :

Արարողութեան կը հրաւիրուին ննջեցեալներու պարագաները եւ բարեպաշտ հասարակութիւնը :

×

Այրի Տիկին Տրդատ Հիմինեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ամուսնոյն եւ հօր՝

ՏՐԴԱՏ ՀԻՄԻՆԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ , այս Կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ :

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :

## ՆՈՒԷՐ

Տէր եւ Տիկին Վահրամ Գըմըշեան 10ական Ն. Ֆ. կը նուիրեն Հայ Մշակոյթի Տան եւ Կապոյտ Խաչի կայանին , Տէր եւ Տիկին Թէնէքէճեանի հոգեհանգիստին առթիւ : (Ստանալ Յառաջէն) :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Փարիզի եկեղեցւոյ դիւանը ստացած է հետեւեալ նուէրները իր մշակութային ձեռնարկներուն համար :

Տէր եւ Տիկին Վրոյր Զիթունի 50 Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Կարպիս Գազանճեան քսան Ն. Ֆ., Տիգրան Զիթունիի մահուան Ա. տարեդարձին առթիւ , Պ. Մալասեան քսան Ն. Ֆ., Պ. Հայկ Գըրըք- ճեան (Վէրտէօն) , Տիկին Ալեքսանեան քսան Ն. Ֆ. իր ծնողաց հոգեհանգստեան առթիւ :

## ՏԽՐՈՒՆԻ

Ցաւով կ'իմանանք թէ Լիէժի մէջ (Պելժիա) յետ կարճատեւ եւ անողոք հիւանդութեան իր մահկանացուն կնքած է՝

ՆԱԶԱՐԷԹ ՎԱՃԱՌԱԿԱՆԵԱՆ

(Բնիկ Պարտիզակցի)

56 տարեկանին :

Մեր ցաւակցութիւնները Օր. Աստղիկ Առաքելեանի եւ Պ. Յակոբ Առաքելեանի :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ ԵՒ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Խ. Թորոսեան , Օր. Ս. Թորոսեան եւ ընտանեկան պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց եւ գլխաւորաբար Կապ. Խաչի Իթալիի մասնաճիւղին , որոնք անձամբ , գրաւոր , ծաղկեպսակով կամ փոխան ծաղկեպսակի նուէրներով ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն եւ հօր՝

ԽԱՉԻԿ ԹՈՐՈՍԵԱՆԻ

մահուան առթիւ :

Այս առթիւ կը ծանուցանեն նաեւ թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ , յետ պատարագի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ , իրենց ողբացեալ ամուսնոյն եւ հօր

ԽԱՉԻԿ ԹՈՐՈՍԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ :

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

ՍԱԹԵՆԻԿ ՏԷՐ-ԴԱՒԹԵԱՆԻ
ՄԱՀՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Ս. Մուրատեան վարժարանի Ծնողաց Միութիւնը իր պատուոյ նախագահ՝ Սաթենիկ Տէր - Դաւթեանի մահուան առթիւ հարիւր Ն. Ֆ. կը նուիրէ Շաւիլի դպրոցին եւ յիսուն Ն. Ֆ. Կապ. Խաչին :

## ԳԵՐԵԶՄԱՆԻ ԱՅՑ
PÈRE-LA-CHAISE

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Պելվիլի «Ռոստոմ» խումբին , տարեկան այց , այս Կիրակի ժամը 3ին .— Ա. Ահարոնեանի , Ռուբէնի , Շ. Միսաքեանի , Անդրանիկի , Ա. Խատիսեանի եւ Գ. Օտեանի շիրիմներուն :

Հաւաքուիլ Կամպեթթայի մուտքին առջեւ :

## Հ. Յ. Դ.

ԼԻՈՆ .— Հ. Յ. Դ. Լիոնի «Վարանդեան» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները այս Ուրբաթ ժամը 20·30ին , սովորական հաւաքատեղին :



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Լիոնի Վարանդեան կոմիտէին եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Սիամանթօ» խումբին :

Այս Շաբաթ երեկոյ ժամը 8·30ին , Րիւ տիւ Նուառի սրահին մէջ :

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿԵՐ Տ. ՋԷՔԵԱՆ
ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿԵՐ ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ

Գեղարուեստական ճոխ բաժին , որուն կը մասնակցին .—

Օր. ԱՆԺԷԼ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ եւ Փարիզէն յատկապէս հրաւիրուած ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ (երգ) , դաշնակի ընկերակցութեամբ ծանօթ խմբավար ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ :

### ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Վալանսի Շրջ. կոմիտէի :

Այս Շաբաթ երեկոյ , ժամը 8·30ին քաղաքապետարանի թատրոնին մէջ :

Կը նախագահէ Ընկ. Ս. ՍԻՍԼԵԱՆ
Կը խօսի Ընկ. Յ. ԱՐԹԻՆԵԱՆ
(Մարսէյլէն)

Գեղարուեստական ճոխ բաժին :

Կ'արտասանեն .— Օր. Օր. Մարի Աւեեան , Ս. Շահինեան , Օ. Քէչէճեան :

Կ'երգեն .— Բիւզանդ Պալեան , Գօգօ (Ռոմանէն) :

Նուագախումբ Հ. Յ. Դ. Նոր Սերնդականներու կողմէ : Ա. Գասեան , Ա. Ղազարոսեան , Ա. Շահինեան :

Մուտքը ազատ է

### ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Այս Կիրակի :

Կը խօսի Ընկ. ՀՐԱՆՏ - ՍԱՄՈՒԷԼ

### ՎԻԷՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. « Անի » կոմիտէի :

Այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին , «Սէրքըլ Կաթօլիկ»ի սրահին մէջ :

Կը նախագահէ Ընկ. ՄԻՍԱՔ ՄԻՐՋԻ
Կը խօսի Ընկ. Յ. ԱՐԹԻՆԵԱՆ (Մարսէյլէն) :

Գեղարուեստական խնամուած բաժին :

Խմբերգ եւ արտասանութիւններ՝ Հ. Յ. Դ. «Նոր Սերունդ»ի կողմէ :

Նուագ դաշնակով՝ Օրիորդներ Ռստիկեան եւ Ջաֆարեան :

Պիտի արտասանէ Օր. Գինոսեան , մեներգ՝ Տիկին Անժէլ Սուքիասեան :

Մուտքը ազատ է :

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Հ. Յ. Դ. Արդութեան խումբի ընկերները, ընկերուհի Սաթենիկ Տէր Դաւթեանի ցաւալի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի Մշակոյթի Տան կը նուիրեն հարիւր Ն. Ֆ.։



Հ. Բ. Ը. Միութեան Կեդր. վարչութիւնը խոր վշտով կը ծանուցանէ Հ. Բ. Ը. Միութեան բազմավաստակ մշակ՝

**ՎԱՀԱՆ Մ. ՔԻՒՐՔՃԵԱՆԻ**

մահը, որ տեղի ունեցաւ Հոկտ. 30, Երկուշաբթի օր, երեկոյեան ժամը 9·15ին, իր բնակարանին մէջ ։

Յուղարկաւորութեան արարողութիւնը կատարուեցաւ Ուրբաթ, Նոյեմբեր 3, ժամը 2ին, Նիւ Եորքի Ս. Խաչ եկեղեցիին մէջ։

Հ. Բ. Ը. Միութեան բոլոր վարիչ – մարմիններն ու անդամները սրտագին յարգանքով կը խոնարհին յիշատակին առջեւ այս երախտաշատ գործիչին, որ մեզմէ ընդմիշտ կը բաժնուի 98ամեայ օրհնեալ ծերութեան մէջ, իր բոլանդակ կեանքը նուիրելէ ետք ազգին եւ Բարե – գործականի ծառայութեան ։

Հ. Բ. Ը. Միութեան տարեգրութեանց մէջ զուրգուրանքով պիտի պահուի իր սիրելի անունը։

ԿԵԴՐ. ՎԱՐՉՈՒԹԻՒՆ
Հ. Բ. Ը. ՄԻՈՒԹԵԱՆ

Նիւ Եորք, 31 Հոկտեմբեր, 1961

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այս Կիրակի ժամը 10ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ տեղի կ՚ունենայ հոգեհանգստեան Ս. պատարագ եւ պաշտօն, Մոնմորանսիի եւ Անժէյի հանգստեան տուներուն մէջ մեռած պատսպարեալներու հոգւոյն ։

Արարողութեան կը հրաւիրուին նըն – ջեցեալներու պարագաները եւ բարեպաշտ հասարակութիւնը ։

>

Կը ծանուցանենք թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ, յետ պատարագի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, իրենց ողբացեալ ամուսնոյն եւ հօր

**ԽԱՉԻԿ ԹՈՐՈՍԵԱՆԻ**

մահուան քառասունքին առթիւ։

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակիր յարգողները ։



## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Նոր շրջանի բացման վեղարուեստական ցերեկոյթը տեղի պիտի ունենայ Դեկտեմբեր 10ին, Մշակոյթի Տան մէջ, Կիրակի ժամը 16ին։ Կը խնդրուի նկատի ունենալ այս թուականը։ Մանրամասնութիւնները յառաջիկային ։

### ԺՈՂՈՎ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Ֆ. Կ. Խաչի Տէսինի Ազգային վարժարանի կրթ. Մարմինը խորհրդակցական ժողովի մը կը հրաւիրէ աշակերտներու ծնողքները, 10 Նոյեմբեր, Ուրբաթ երեկոյեան ժամը 8·30ին, Հ. Յ. Դ. Տան մէջ։ Ժողովին կրնան ներկայ ըլլալ նաեւ բոլոր փափաքողները ։

## ԳԵՐԵԶՄԱՆԻ ԱՅՑ

PÈRE-LA-CHAISE

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Պելվիլի «Ռոստոմ» խումբին, տարեկան այց, այս Կիրակի ժամը 3ին.— Ա. Ահարոնեանի, Ռուբէնի, Շ. Միսաքեանի, Անդրանիկի, Ա. Խատիսեանի եւ Գ. Օտեանի շիրիմներուն ։

Հաւաքուիլ Կամպեթայի մուտքին առջեւ ։

## Հ. Յ. Դ.

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Քրիստափոր ենթակոմիտէին ընդհանուր անդամական ժողովը այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին, Ահարոնեան ակումբին մէջ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։







Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Լիոնի Վարանդեան կոմիտէին եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Սիամանթօ» խումբին ։

Այս Շաբաթ երեկոյ ժամը 8·30ին, Րիւ տիւ Նուառի սրահին մէջ ։

**ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿԵՐ Տ. ՋԷՔԵԱՆ**

**ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿԵՐ ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ**

Գեղարուեստական ճոխ բաժին, որուն կը մասնակցին.—

Օր. ԱՆԺԷԼ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ եւ Փարիզէն յատկապէս հրաւիրուած ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ (երգ), դաշնակի ընկերակցութեամբ ծանօթ խմբավար ԿԱՐԳԻՍ ԱՓՐԻԿԵԱՆԻ։

### ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Վալանսի Շրջ. կոմիտէի ։

Այս Շաբաթ երեկոյ, ժամը 8·30ին քաղաքապետարանի Թատրոնին մէջ ։

Կը նախագահէ Ընկ. Ս. ՍԻՍԼԵԱՆ

Կը խօսի Ընկ. Յ. ԱՐԹԻՆԵԱՆ (Մարսէյլէն)

Գեղարուեստական ճոխ բաժին ։

Կ՚արտասանեն.— Օր. Օր. Մարի Աւեճեան, Ս. Շահինեան, Օ. Քէչէճեան ։

Կ՚երգեն.— Բիւզանդ Պալեան, Գօգօ (Ռոմանէն) ։

Նուագախումբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդականներու կողմէ ։ Ա. Գասեան, Ա. Ղազարոսեան, Ա. Շահինեան ։

Մուտքը ազատ է

×

### ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Այս Կիրակի ։

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Տէսինի կոմիտէին ։ Այս Կիրակի կէսօրէ ետք, ժամը 3ին, Հ. Յ. Դ. Տան մէջ։

Կը նախագահէ՝ Ընկ. Մ. ԿԱՐԱՊԵՏԵԱՆ

Կը խօսի Ընկ. ՀՐԱՆՏ – ՍԱՄՈՒԷԼ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին տեղւոյն լաւագոյն ուժերը եւ Ֆ. Կ. Խաչի վարժարանին աշակերտութիւնը ։

Մուտքը ազատ է

Կը հրաւիրուի Տէսինահայութիւնը անխտիր ։

×

### ՎԻԷՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. «Անի» կոմիտէի ։

Այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, «Սէրքըլ Կաթոլիկ»ի սրահին մէջ ։

Կը նախագահէ Ընկ. ՄԻՍԱՔ ՄԻՐԶԷ

Կը խօսի Ընկ. Յ. ԱՐԹԻՆԵԱՆ (Մարսէյլէն) ։

Գեղարուեստական խնամուած բաժին ։ Խմբերգ եւ արտասանութիւններ՝ Հ. Յ. Դ. «Նոր Սերունդ»ի կողմէ ։

Նուագ դաշնակով՝ Օրիորդներ Ռստիկեան եւ Ջաֆարեան ։

Պիտի արտասանէ Օր. Գինոսեան, մեներգ՝ Տիկին Անժէլ Սուքիասեան ։

Մուտքը ազատ է ։




### ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են, չորրորդ էջը ։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է ։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել վարչութեան ։

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

ՅԱԿՈԲ ՏԷՐ-ՅԱԿՈԲԵԱՆ

**Պ**ԱՐՏԻԶԱԿԸ **Խ**ԱՏՈՒՏԻԿ

Ցանկուածաբար՝ ՄԱՆՈՒՇԱԿ ԵՒ ԻՐ ՀԷՔԵԱԹՆԵՐԸ :

500 էջ

13 Hors–Texte

Հատորը Փարիզի եկեղեցւոյ կըր-թական մարմնին ;

Գին 12 Ն. Ֆ.

Արտասահման 4 տոլար :

Դիմել՝

Յառաջին

Հայ գրավաճառներուն

Փարիզի եկեղեցին կամ Տպարան

ՏԷՐ – ՅԱԿՈԲԵԱՆ

---

Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր ու Ժամեր

---

ՑԵՐԵԿՈՅԹ

Ֆ. Կապ. Խաչի Փարիզի մասնաճիւղի կողմէ Կիրակի (12 Նոյեմբեր) կէսօրէ վերջ ժամը 4էն 10 :

17 Րիւ Պլէօ, Մշակոյթի Տան Ս. Թէքէլերեան չքեղ սրահին մէջ :

Ձոխ պիւֆէ : Մատչելի գին :

Մուտք 2 Ն. Ֆ.

---

ԸՆՏԱՆԵԿԱՆ ՄԵԾ ԽՆՋՈՅՔ

Կազմակերպուած Փարիզի Թոքատի Հայրենակցական Միութեան կողմէ :

Նախագահութեամբ՝ Մարսիլիոյ Թո-քատի Հայր. Միութ. ներկայացուցիչ՝ ՅԱՐՈՒԹԻՒՆ ՂԱԶԱՐԵԱՆԻ

12 Նոյեմբեր, Կիրակի կէսօրէ ետք, ժամը 4էն, Իսի լէ Մուլինոյի Խրիմեան սրահը, 2 Րիւ տը Տէֆանս :

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆ

Երգ, նուագ, պար, արտասանութիւն, սիրայօժար կը մասնակցին Տիկին Սրապեան, Տիկին Գալայճեան, Օր. Սրապեան, Օր. Թարոն, Պ. Պ. Լ. Մոմճեան, Յով-սէփեան, Գարակէօզեան, Ս. Յակոբեան եւ ուրիշներ :

Մուտքը ազատ է, ոչ անուրդ, ոչ հանգանակութիւն :

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

---

R. T. F.

ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ

ՇՈՒՇԱՆԻԿ ՄԻԼՏՈՆԵԱՆ

Տաւղահար

(*Harpiste*)

Չորեքշաբթի իրիկուն (Նոյեմբեր 8) ժամը 21ին Սալ Կավօ :

ԿԸ ՆՈՒԱԳԷ Ռավէլ (էնթրոտիւքսիոն եւ Ալլեկրօ) եւ Փիծէթթի (տաւիղի եւ նուագախումբի քոն-չերթօ) :

Զայնագրութեան մասնակից Սեննակի նուագախումբը, կը ղեկավարէ Անտրէ Ժիրար :

Հրաւիրատոմսերը ստանալու հա-մար դիմել՝

18, Rue François Ier

---

ԳՐԱԿԱՆ ՀԱՄԵՐԳ

ՍԱՐԳԻՍ ՊՕՂՈՍԵԱՆ

Եօթներորդ անգամ հայ գրականու-թեան պարտէզին մէջ,

« Միջնադարեան գանձեր »

Կիրակի, Նոյեմբեր 12, ժամը 21·15ին, Սալ Մազըռօ, Մարսէյլ :

Տոմսերը՝ 3 եւ 5 Ն. Ֆ. :

---

ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ

ՄԱՐՏ 18ԻՆ

---

ԺՈՂՈՎ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Ֆ. Կ. Խաչի Տէսինի Ազգային վարժարանի կրթ. Մարմինը խորհրդակցական ժողո-վի մը կը հրաւիրէ աշակերտներու ծնողք-ները, 10 Նոյեմբեր, Ուրբաթ երեկոյեան ժամը 8·30ին, Հ. Յ. Դ. Տան մէջ : Ժո-ղովին կրնան ներկայ ըլլալ նաեւ բոլոր փափաքողները :

---

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Բ. Ը. Մ. Հայունեաց մասնաճիւղին տարեկան պարահանդէսը՝ ԴԵԿՏԵՄԲԵՐ 16ԻՆ, ՇԱԲԱԹ :

---

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Շաւիլի վարժարանի նպաստ տրուելիք պարահանդէսը Դեկտեմբեր 3ին, ման-րամասնութիւնները յաջորդաբար :

---

ՏԱՐՊ

ԹԱՐԹ

GALERIE VENDOME

12, Rue de la Paix

ՆՈՅԵՄԲԵՐ 3ԷՆ 22

Ամէն օր բացի կիրակիէն, ժամը 10էն 12·30 եւ 14·30էն 19 :

---

ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ

ՑԵՐԵԿՈՅԹ

ՄԱՐՏ 11ԻՆ

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

---

ԿԻՐԱԿԻ 17 ԴԵԿՏԵՄԲԵՐ

ժամը 16էն 22

Սամուէլ Մուրատեան

վարժարանի թատերասրահին մէջ

ԿԱՂԱՆԴԻ ԾԱՌԻ

Հանդէս

Ծնողաց Միութեան կողմէ պատրաստուած

---

ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ ՈՐԲԵՐՈՒ ՕԳՆ. ՄԱՐՄՆԻ

ՏԱՐԵԿԱՆ ՀԱՆԴԷՍԸ

Կիրակի, Դեկտեմբեր 3ին, ժամը 17էն կէս գիշեր, Կրան Օթէլի շքեղ սրահ-ներուն մէջ, **12, B. des Capucines**

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ՝ Պ. ԿԱՐԱՊԵՏ ՅԱԿՈԲԵԱՆԻ

Երկու նուագախումբ, հաճելի գեղարուեստական բաժին :

Մուտք 6 Ն. Ֆ., իրենց քարտը ներկայացնող ուսանողներուն կէս գին :

Կը խնդրուի կանխաւ ապահովել սեղանները :

WAG. 38-54

---

ՄՕՏ ՕՐԷՆ ԼՈՅՍ ԿԸ ՏԵՍՆԷ

ՔԵՐՈՎԲԷ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԻ

ԱԼՊՈՄ

ՅՈՒՇԱՄԱՏԵԱՆ

ՆՈՒԻՐՈՒԱԾ

ՏԱՐՕՆ ԱՇԽԱՐՀԻ

Բ. ՄԱՍԸ ՆՈՒԻՐՈՒԱԾ Է ՀԱՅԱՍ-ՏԱՆԻ ՔԱՌԱՍՆԱՄԵԱՅ ՇԻՆԱՐԱ-ՐԱԿԱՆ ՎԵՐԵԼՔԻՆ :

Տպարան ՏԱՐՕՆ, Լիոն, 1962

Դիմել հեղինակին՝

Ք. ԿԱՐԱՊԵՏԵԱՆ (Տարօն)

20, Avenue des Cottages

CALUIRE (Rhône)

---

Կ. ՓՕԼԱՏԵԱՆ

ՋՐՈՅՑ

Սէն – Ժոն Փերսի (Նոպելեան մըր-ցանակ)

Հայր Ներսէս Ակինեանի

Անտրէ Ռուսոյի

Կոստան Զարեանի

Սիմոն Վրացեանի հետ

Շատ հետաքրքրական հատոր մը զոր պիտի կարդաք հաճոյքով :

Ստանալու համար դիմել Փարիզի հայ գրավաճառներուն կամ ուղղա-կի հեղինակին՝

G. POLADIAN

53, Avenue de St-Julien

Marseille - 12e

Գին՝ թղթակազմ 5 Ն. Ֆ., Լաթակազմ 7·50 Ն. Ֆ. :

---

MORY et Cie

ՆՈՒԷՐՆԵՐՈՒ ԵՒ ԾՐԱՐՆԵՐՈՒ ԱՌԱՔՈՒՄ ԴԷՊԻ ԽՈՐՀՐԴ. ՄԻՈՒԹԻՒՆ :

Գնեցէք զանոնք ձեր ուզած տեղը եւ առաքումը մեզի վստահեցէք : Նուազա-գոյն ծախսերով կը ղրկենք խորհրդ. Միութիւն :

Դիմեցէք մեր նոր գիները գիտնալու համար.—

10, Rue St. Vincent de Paul, Paris 10e

(PRÈS DE LA GARE DU NORD)

Téléphone : TRU. 27-70

---

ԾԱՅԱՆ

ԱՅՆՈՒՀԻ

Նաւասարդ Արամ Երգի

Ա. Տպագրութիւն, 1929

Գին 7 Ն. Ֆր.

Դիմել ՅԱՌԱՋին

---

FOURRURES

Roger YOPIAN

PRIX INTERESSANTS

NEUF et REPARATION

84, Boulevard de Stalingrad, 84

— CHOISY-LE-ROI (Seine) —

Autobus : de la Porte de Choisy, descendre 3 Communes ou Rue du Docteur-Roux.

---

ԵՒՐՈՊԱՅԻ

ՄԵԾԱԳՈՅՆ ԱՐՏԱԴՐԻՉԸ

ՀԷԼՎԱ

ԼՈԳՈՒՄ

ՍՈՒՍԱՄ – ՀԷԼՎԱ

ԹԱՀԻՆ

ՇԱՐՈՑ

(ՌՈՃԻԿ)

ՎԱՐԴԷ-ԱՆՈՅՇ

LE BOSPHORE MARQUE DEPOSEE

ՆՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ...

CHOC-ALVA · CHOCO-LOC

Ste le BOSPHORE

SIÈGE SOCIAL

2, Rue Louis Astouin /Marseille (2ème)

---

Imprimerie Spéciale du journal « Haratch »

32, Rue de Trévise. PARIS (9e)

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Ոմն Անխէշէն 50 Ն. Ֆ.:

×

Ընկեր Ա. Քէնտէրեանի տղուն՝ Ս. Քէնտէրեանի ամուսնութեան առթիւ Հայ Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին նուիրած են՝ Տիկին Հ. Սիմոնեան 20 Ն. Ֆ., Յակոբ Սիմոնեան 30, Ահարոն Քէնտէրեան յիսուն, Պօղոս Քէնտէրեան 50, Հայկունի Թաշճեան 10, Ֆ. Կ. Խաչի Պորտոյի մասնաճիւղ քսան, Հ. Յ. Դ. Պորտոյի Մուրատ խումբ յիսուն Ն. Ֆ.:
Գումար՝ 230 Ն. Ֆ.:

×

Նոյն առթիւ Ֆ. Կ. Խաչի Պորտոյի մասնաճիւղի դպրոցին նուիրած են՝ Ա. Քէնտէրեան քսան Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Կարապետեան, Տէր եւ Տիկին Մարկոյեան, Տիկին Մ. Խաչատուրեան, եւ Կարապետ Վարդանեան տասնական Ն. Ֆ.:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Կարապետ Ծառուկեան, Տէր եւ Տիկին Յովհաննէս Սեֆերեան, Տիկին Փօլ Սարգիսեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Աղեքսանտր Պասմաճեան, Մարի Քրիսթին Ծառուկեան շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, հեռագրով, գրաւոր, ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին իրենց տարաբախտ զաւկին, թոռան, եղբօր եւ մօրեղբօր՝

ԺԱՆ – ԳԼՕՏ ԳԱՌՆԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆԻ կսկծալի կորուստին առթիւ: Մասնաւոր շնորհակալութիւն՝ Հայ եկեղեցւոյ վարչութեան, Նախկին Ռազմիկներու Միութեան, Հ. Յ. Դաշնակցութեան եւ Նոր Սերունդին,:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Իսիի Խանասոր խումբը շնորհակալութեամբ ստացած է 50 Ն. Ֆ. Պ. Եսայեանէ իր զաւկին Պետրոս – Փիէր Եսայեանի մահուան Գ. տարեդարձին առթիւ, փոխան հոգեհանգիստի:

×

Այրի Տիկին Եղիսաբէթ Եկէնեան եւ զաւակները շնորհակալութիւն կը յայտնեն ամէն անոնց, որոնք անձամբ, գրաւոր իրենց ցաւակցութիւնները յայտնեցին իրենց ամուսնոյն եւ հօր ՅԱՐՈՒԹԻՒՆ ԵԿԷՆԵԱՆԻ մահուան առթիւ, որ տեղի ունեցաւ Հոկտեմբեր 25ին, 73 տարեկանին Արնուվիլի մէջ:

ՉՈՐԵՔՇԱԲԹԻ ՆՈՅԵՄԲԵՐ 8
ԺԱՄԸ 21ԻՆ
ՍԱԼ ՏԸՊԻՒՍԻԻ ՄԷՋ
Կը խօսի.—
Պ. Զ. ԽԱՆԶԱՏԵԱՆ
ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ Ի ՀԱՅԱՍՏԱՆ

Դասախօսութիւնը կազմակերպած են Պրեմոն Մրցանակի Կոմիտէն եւ Գալուստ Կիւլպէնկեան Հիմնարկութիւնը:

### ՑԵՐԵԿՈՅԹ

Ֆ. Կապ. Խաչի Փարիզի մասնաճիւղի կողմէ Կիրակի (12 Նոյեմբեր) կէսօրէ վերջ ժամը 4էն 10:
17 Րիւ Պլէօ, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան շքեղ սրահին մէջ:
Ճոխ պիւֆէ: Մատչելի գին:
Մուտք 2 Ն. Ֆ.



## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

### ՊՕՄՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Զաւարեան Ենթակոմիտէի:
Ս. ՍԱՀԱԿ – ՄԵՍՐՈՊ Ազգ. սրահին մէջ, այս Շաբաթ ժամը 21ին:
Նախագահ՝ Ընկ. Յ. ԱՂԱՅԵԱՆ:
Կը խօսին՝ Ընկերներ Յ. ՆԻԿՈՂՈՍԵԱՆ եւ ՅԱԿՈԲ ԱՐԹԻՆԵԱՆ:
Գեղարուեստական բաժին:
Բացում, խմբերգ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդ: Նուագ.– Ջեռնադաշնակ փոքրիկն Ճօշկունեան: Մեներգ.— Ընկ. Մ. Տէրոյեան ընկերակցութեամբ դաշնակ՝ Օր. Ակինեանի:
Արտասանութիւն՝ Ընկ. Գ. Քէնտիրեան, մեներգ՝ Պ. Զարեհ Գասեան, հայկական պարեր եւ խմբապարեր Հ. Յ. Դ. Նոր Սերունդի երկսեռ խումբին կողմէ:
Խօսնակ՝ Ընկ. Կ. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ:
Ճոխ պիւֆէ: Մուտքը ազատ է

### ՆԻՍԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Նիսի Հ. Յ. Դ. Գէորգ Չաւուշ խումբին:
Հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէին եւ մասնակցութեամբ Նիսի Նոր Սերունդի «Հայաստան» խումբին:
Այս Կիրակի, ժամը 15ին, Օթէլ Սքրիպի շքեղ սրահին մէջ 20 Ավընիւ Ժօրժ Քլէմանսօ:
Կը նախագահէ Ընկ. ԳԱՐԵԳԻՆ ԳԷՈՐԳԵԱՆ, Կը բանախօսէ Ընկ. ՏԻԳՐԱՆ ԹԱԴՈՅԵԱՆ:
Գեղարուեստական ճոխ բաժին, Մարսէյլէն հրաւիրուած Նոր Սերնդականներով:
Մուտքը ազատ է:

### ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Նոյեմբեր 19ին:

## ՆՈՒԷՐ

Տիկին Ա. Խաչիկեան Սաթենիկ Տէր-Դաւթեանի մահուան առթիւ տասը Ն. Ֆ. կը նուիրէ Մշակոյթի Տան: (Ստանալ «Յառաջ»էն):

×

Պ. Հայկ Արամ Պարսամեան 40 Ն. Ֆ. կը նուիրէ Կապ. Խաչի հիւանդներուն: (Ստանալ «Յառաջ»էն):

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի խնամակալութիւնը կը ծանուցանէ թէ Նիւեորքաբնակ իր պատուոյ անդամներէն եւ Դպրոցասէրի նախկին խնամակալուհի, ՄԱՆՆԻԿ ԽՕՃԱՍԱՐԵԱՆԻ մահուան քառասունքին առթիւ հոգեհանգստեան պաշտօն տեղի պիտի ունենայ այս Կիրակի, Փարիզի մայր եկեղեցիին մէջ:



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ՃԱՇ - ԽՆՋՈՅՔ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդին:
Այս Շաբաթ, ժամը ճիշդ 19ին,
— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) —

Հովանաւորութեամբ
եւ ներկայութեամբ

ՎԱՀԷ ՔԱՋԱՅԻ
VAHÉ KATCHA
(Ֆրանսագիր ծանօթ գրագէտ)

Գեղարուեստական ճոխ բաժին, մասնակցութեամբ երիտասարդ արուեստագէտներու:
Ճաշագին 10 Ն. Ֆ.:
Տեղերը սահմանափակ ըլլալով, կը խնդրուի յարգել նշանակուած ժամը:

### ԸՆԹԵՐՑՈՒՄՆԵՐ ԲՈԼՈՐԻՆ ՀԱՄԱՐ

Հեռատեսիլի «Ընթերցումներ բոլորին համար» այս Չորեքշաբթի իրիկուան յայտագրին մէջ
ՎԻՔԹՈՐ ԿԱՐՍՕՆ
պիտի խօսի իր Բ. վէպին՝
**Le Chevalier à l'Emeraude**ի
մասին:

### ԸՆՏԱՆԵԿԱՆ ՄԵԾ ԽՆՋՈՅՔ

Կազմակերպուած Փարիզի Թոքատի Հայրենակցական Միութեան կողմէ:
Նախագահութեամբ՝ Մարսիլիոյ Թոքատի Հայր. Միութ. ներկայացուցիչ՝
ՅԱՐՈՒԹԻՒՆ ՂԱԶԱՐԵԱՆԻ
12 Նոյեմբեր, Կիրակի կէսօրէ ետք, ժամը 4ին, Իսի լէ Մուլինոյի Խրիմեան սրահը, 2 Րիւ տը Տէֆանս:

### ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆ

Երգ, նուագ, պար, արտասանութիւն, սիրայօժար կը մասնակցին Տիկին Սրապեան, Տիկին Գալայճեան, Օր. Սրապեան, Օր. Թարոն, Պ. Պ. Լ. Մոմճեան, Յովսէփեան, Գարակէօզեան, Ս. Յակոբեան եւ ուրիշներ:
Մուտքը ազատ է, ոչ աճուրդ, ոչ հանգանակութիւն:
Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

### ԳՐԱԿԱՆ ՀԱՄԵՐԳ

## ՍԱՐԳԻՍ ՊՕՂՈՍԵԱՆ

Եօթներորդ պտոյտ հայ գրականութեան պարտէզին մէջ,
« Միջնադարեան գանձեր »
Կիրակի, Նոյեմբեր 12, ժամը 21·15ին,
Սալ Մազընօ, Մարսէյլ:
Տոմսերը՝ 3 եւ 5 Ն. Ֆ.:

## Հ. Յ. Դ.

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ս. Մինասեան Ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ ժամը 21ին: Ներկայ կ'ըլլան Կեդր. եւ Շրջ. կոմիտէներու ներկայացուցիչները: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Ալֆորվիլի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս Չորեքշաբթի (Նոյեմբեր 8) ժամը 20·30ին, Տիկին Ս. Անդրէասեանի բնակարանը:

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Արնուվիլի Նոր Սերունդի խումբին, Սարսէլի մէջ:
Դեկտեմբեր 10ին, կը ներկայացուի՝

## ԱՇԽԱՐՀԻ ԴԱՏԱՍՏԱՆԸ

### ԺՈՂՈՎ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Ֆ. Կ. Խաչի Տէսինի Ազգային դպրոցի Կրթ. Մարմինը խորհրդակցական ժողովի մը կը հրաւիրէ աշակերտներու ծնողները, 10 Նոյեմբեր, Ուրբաթ երեկոյեան ժամը 8·30ին, Հ. Յ. Դ. Տան մէջ: Ժողովին կրնան ներկայ ըլլալ նաեւ բոլոր փափաքողները:



## Surprise Party

**Orchestre NOR SEROUND**

DISQUES CHOISIS

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդ «Ահարոնեան» խումբի կողմէ:
Կիրակի (Նոյեմբեր 19) ժամը 17էն 23 Մշակոյթի Տան մէջ
17, Rue Bleue, Paris 9e

**Ambiance** **Bar** **Buffet**

## ՆԱՆՍԷՆԵԱՆ ՀԱՅԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Գաղթականաց հայկական բաժնի գըրասենեակը անգամ մը եւս կը յիշեցնէ իր «հպատակներուն» թէ ինքնութեան թուղթին կողքին ՊԱՐՏԱՒՈՐԻՉ է ազգութիւնը հաստատող վկայական ը՝

Certificat de Nationalité

Այս թուղթը պէտք է նորոգուի ամմիջապէս որ ի զօրու ըլլալէ կը դադրի։ Նորոգութեան համար ձեւակերպութիւնները այն են ինչ որ էին առաջին անգամ զայն ստանալու համար, այսինքն.— Ազգութեան թուղթը, մէկ պատկեր, անձագրի (Քարթ տ'իտանթիթէ) վաւերացուած քոփին եւ 1070 ֆր. (ձրի տընտեսապէս տկարներուն համար)։

Այս վկայականը կը նորոգուի այն թըւականէն երբ դադրած է ի զօրու ըլլալէ, օրինակ.— եթէ թուղթը վերջացած է.— 1959 Հոկտ. 15, կը նորոգուի 1959 ՀՈԿՏ. 15էն, եւ ոչ ներկայացուած օրէն։

Անգամ մը եւս կը շեշտենք թէ այս թուղթը ՊԱՐՏԱՒՈՐԻՉ է որեւէ պարագայի։

Գաղթականաց գրասենեակը բաց է ամէն առտու (բացի Շաբաթէն) ժամը 9էն 12·30։

23, Rue La Pérouse (Métro Kleber)

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Վահրամ Վարդանոֆ եւ ընտանեկան պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր, ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն եւ ազգականին՝

ՎԱՀՐԱՄ ՎԱՐԴԱՆՈՖԻ

կսկծալի մահուան առթիւ։

---

ԿԻՐԱԿԻ 17 ԴԵԿՏԵՄԲԵՐ

ժամը 16էն 22

Սամուէլ Մուրատեան վարժարանի թատերասրահին մէջ

**ԿԱՂԱՆԴԻ ԾԱՌԻ**

Հանդէս

Ծնողաց Միութեան կողմէ պատրաստուած

---

**ՇԱՐԲ**

**GALERIE VENDOME**

**12, Rue de la Paix**

ՆՈՅԵՄԲԵՐ 3էն 22

Ամէն օր բացի կիրակիէն, ժամը 10էն 12·30 եւ 14·30էն 19։

---

Մեր յարգելի յաճախորդներուն կը հաղորդենք թէ, 35 տարի է Լիոն հաստատուած

**ԱՐԱՔՍ ՏՊԱՐԱՆԸ**

(Ս. ՓՈՂՀԱՐԵԱՆ)

Փոխադրուած է.—

**6o, Rue d'Anvers, LYON 7e**

**Tél: 72-89-03**

եւ ընկերութեան վերածուած ըլլալով այսուհետեւ կը կոչուի՝

**Imprimerie d'Anvers**

S. A. R. L. au Capital de 30.000 N. F.

Ինչպէս առաջ, ներկայիս ալ կը ստանձնենք տպագրական հայերէն գործեր, ինչպէս նաեւ ֆրանսերէն, ամէն տեսակ, վարչական, առեւտըրական եւ ճարտարարուեստի վերաբերեալ գործեր։

ԴԻՒՐԱՄԱՏՉԵԼԻ ՊԱՅՄԱՆՆԵՐ

---

Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

---

## ՃԱՇ - ԽՆՋՈՅՔ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդին։

Այս Շաբաթ, ժամը ճիշդ 19ին,

— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) —

Նախագահութեամբ եւ ներկայութեամբ

**ՎԱՀԷ ՔԱՉԱՅԻ**

VAHÉ KATCHA

(Ֆրանսագիր ծանօթ գրագէտ)

Գեղարուեստական ճոխ բաժին, մասնակցութեամբ երիտասարդ արուեստագէտներու։

Ճաշագին 10 Ն. Ֆ.։

Տեղերը սահմանափակ ըլլալով, կը խնդրուի յարգել նշանակուած ժամը։

---

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Րաֆֆի խումբի ժողովը այս Հինգշաբթի երեկոյեան ժամը 21ին։ Մշակոյթի Տան մէջ։

---

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Արնուվիլի Նոր Սերունդի խումբին, Սարսէլի մէջ։

Դեկտեմբեր 10ին, կը ներկայացուի՝

**ԱՇԽԱՐՀԻ ԴԱՏԱՍՏԱՆԸ**

---

ԳՐԱԿԱՆ ՀԱՄԵՐԳ

**ՍԱՐԳԻՍ ՊՕՂՈՍԵԱՆ**

Եօթներորդ պտոյտ հայ գրականութեան պարտէզին մէջ,

« Միջնադարեան գանձեր »

Կիրակի, Նոյեմբեր 12, ժամը 21·15ին, Սալ Մազընօ, Մարսէյլ։

Տոմսերը՝ 3 եւ 5 Ն. Ֆ.։

---

ՄՕՏ ՕՐԷՆ ԼՈՅՍ ԿԸ ՏԵՍՆԷ

ՔԵՐՈՎԲԷ ԿԱՐԱՊԵՏԵԱՆԻ

**ԱԼԲՈՄ ՅՈՒՇԱՄԱՏԵԱՆ**

ՆՈՒԻՐՈՒԱԾ

**ՏԱՐՕՆ ԱՇԽԱՐՀԻ**

Բ. ՄԱՍԸ ՆՈՒԻՐՈՒԱԾ Է ՀԱՅԱՍՏԱՆԻ ՔԱՌԱՍՆԱՄԵԱՅ ՇԻՆԱՐԱՐԱԿԱՆ ՎԵՐԵԼՔԻՆ։

Տպարան ՏԱՐՕՆ, Լիոն, 1962

Դիմել հեղինակին՝

Ք. ԿԱՐԱՊԵՏԵԱՆ (Տարօն)

20, Avenue des Cottages

CALUIRE (Rhône)

---



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

---

### ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ ԿՐԸՆՈԲԼԻ ՄԷՋ

Նոյեմբեր 19ին։

---

### ՅԵՐԵԿՈՅԹ

Ֆ. Կապ. Խաչի Փարիզի մասնաճիւղի կողմէ Կիրակի (12 Նոյեմբեր) կէսօրէ վերջ ժամը 4էն 10։

17 Րիւ Պլէօ, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան շքեղ սրահին մէջ։

Ճոխ պիւֆէ։ Մատչելի գին։

Մուտք 2 Ն. Ֆ.

---

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

ՅԱԿՈԲ ՏԷՐ-ՅԱԿՈԲԵԱՆ

**ՊԱՐՏԻԶԱԿԸ ԽԱՏՈՒՏԻԿ**

Յաւելուածաբար՝ ՄԱՆՈՒՇԱԿ ԵՒ ԻՐ ՀԷՔԵԱԹՆԵՐԸ։

500 էջ

13 Hors–Texte

Հասոյթը Փարիզի եկեղեցւոյ կըրթական մարմնին։

Գին 12 Ն. Ֆ.

Արտասահման 4 տոլար։

Դիմել՝

Յառաջին

Հայ գրավաճառներուն

Փարիզի եկեղեցին կամ Տպարան ՏԷՐ - ՅԱԿՈԲԵԱՆ

---

ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ

ՄԱՐՏ 18ԻՆ

---

## ՀՐԱՆՏ ՍԱՄՈՒԷԼԵԱՆ ԳՐԱՏՈՒՆ

51, Rue Monsieur-le-Prince, PARIS - 6e — Chèque Postal : 1278-35

| | |
|---|---|
| PEINTRES et SCULPTEURS ARMENIENS, par *Onnig Avédissian,* Le Caire | 100 NF. |
| MINIATURES ARMENIENNES, par *Lydia Dournova,* Paris. | 120 NF. |
| NAREK, le Livre de Prières, trad. par *Isaac Kéchichian,* Paris, 1961. | 25,20 NF. |
| LE CHANT DU PAIN, *Daniel Varoujan,* Paris. | 6,30 NF. |
| HISTOIRE DE L'ARMENIE, par *H. Thorossian,* Paris. | 10 NF. |
| ԲԱՌԱՐԱՆ ՖՐԱՆՍԵՐԷՆԷ ՀԱՅԵՐԷՆ, Հ. Ե. Տէր Ղազարեան, Պէյրութ, | 20Ն. Ֆ. |
| ԲԱՌԱՐԱՆ ՖՐԱՆՍԵՐԷՆ ՀԱՅԵՐԷՆ, Մեսրոպ Նուպարեան, Պէյրութ | 40 Ն. Ֆ. |
| ԲԱՌԱՐԱՆ ՀԱՅԵՐԷՆԷ ԳԱՂՂԻԵՐԷՆ, Հ. Գ. Պայեան, Վենետիկ, | 40 Ն. Ֆ. |
| ԱՌՁԵՌՆ ԲԱՌԱՐԱՆ ՀԱՅ. ԳԱՂՂ. Հ. Դ. Ստեփանեան, Վենետիկ | 9 Ն. Ֆ. |
| ԲԱՌԱՐԱՆ ՀԱՅԵՐԷՆ ԼԵԶՈՒԻ, Ս. Գարամաճեան, Պէյրութ, | 40 Ն. Ֆ. |
| ԱՆԳԼԵՐԷՆԷ ՀԱՅԵՐԷՆ ԲԱՌԱՐԱՆ, Յ. Յ. Չագմագճեան, Պէյրութ | 40 Ն. Ֆ. |
| ՅՈՒՇԱՄԱՏԵԱՆ Հ. Մ. Ը. Մ.ի, 1918–1958, Պէյրութ | 22 Ն. Ֆ. |
| ԿԵԱՆՔԻ ՈՒՂԻՆԵՐՈՎ, Բ. հատոր, Ս. ՎՐԱՑԵԱՆ, Պէյրութ | 12 Ն. Ֆ. |
| ՋՐՈՅՑ, Կ. ՓՕԼԱՏԵԱՆ, Ա. հատոր 3·50 Ն. Ֆ. Բ. հատոր 5 Ն. Ֆ. | |
| ԱՆԴՐՇԻՐԻՄԵԱՆ ՁԱՅՆԵՐ, Պ. Սնապեան, Պէյրութ | 4 Ն. Ֆ. |

Առաքման ծախքը գնողին վրայ

ՃՈԽ ՄԹԵՐՔ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՆ ԵՒ ԱՐՏԱՍԱՀՄԱՆԵԱՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԵԱՆՑ

---



**ՃԱՇԱՐԱՆ**

**ՆԱՐ**

ՀԻՄՆԱԴԻՐ ԳՐԻԳՈՐ ԹԵՒԱՆԵԱՆ

Եւրոպական, հայկական եւ կովկասեան ընտիր ճաշեր։

Առաջնակարգ կովկասեան խորովածներ, շաշլիք, քարսքի։

ՀԱՃԵԼԻ ՄԹՆՈԼՈՐՏ

**Bar Américain**

AU CŒUR MÊME DES CHAMPS-ÉLYSÉES

4, RUE ROBERT-ETIENNE
(Rue Marbeuf) PARIS - 8e
Téléphone : BAL. 31-21
Métro : F. D. Roosevelt

---

**MORY et Cie**

ՆՈՒԷՐՆԵՐՈՒ ԵՒ ԾՐԱՐՆԵՐՈՒ ԱՌԱՔՈՒՄ ԴԷՊԻ ԽՈՐՀՐԴ. ՄԻՈՒԹԻՒՆ։

Գնեցէք զանոնք ձեր ուզած տեղը եւ առաքումը մեզի վստահեցէք։ Նուազագոյն ծախքերով կը դրկենք Խորհրդ. Միութիւն։

Դիմեցէք մեր նոր գիները գիտնալու համար.—

**10, Rue St. Vincent de Paul, Paris 10e**

(PRÈS DE LA GARE DU NORD)

**Téléphone : TRU. 27-70**

Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

## ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Ֆ. Կ. Խաչի Պոլ. Օտտոյի վարչու – թիւնը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Պ. Մուրատ Սահակեանի, զա – ւակներուն եւ Տէր եւ Տիկին Պեւրքան ըն– տանիքին եւ պարագաներուն, իրենց կը– նոջ, մօր, քրոջ եւ խնամիին մահ – ուան առթիւ:

Այս առթիւ վարչութիւնս հետեւեալ նուէրները ըրած է փոխան ծաղկեպսակի իրենց սիրելի ընկերուհիի (Թամամ Սա– հակեանի) մահուան աթիւ 10 Ն.Ֆ. տեղ– ւոյս եկեղեցիին, 10 Մարսէյլի Նոր Սե – րունդին, 10 տեղւոյս Արծիւ Մարզական– նին :

## ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

Հայ Կարմիր Խաչի Օղափ. կայանի ըն– դարձակման ի նպաստ կը նուիրեն.—

Տիկին Թեւանեան, Տէր եւ Տիկին Գէ – որգ Պաքըրճեան եւ Պ. Է. Պետրոսեան 50ական Ն. Ֆ.:

Տիկին Գ. Խորասանճեան, Պ. Պ. Ֆրէնկեան, Մարկոսեան եւ Խորասան 30– ական Ն. Ֆ.: Տոքթ. Զ. Զաքմիչեան, Աղապէկեան եղբայրներ, Պ. Պ. Կ. Գա – զազեան եւ Ա. Մալաճեան 20ական: Պ. Պ. Հ. Սէրէնկիւլեան եւ Ժաք Հայրա – պետեան 10ական Ն. Ֆ.:

### ՓՈԽԱՆ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏԻ

Պ. Շնորհք Միքայէլեան (Փուաթիէ) կը նուիրէ քսան Ն. Ֆ. Հ. Կարմիր Խաչի Անտէր հիւանդներու ֆօնտին, Գաբրիէլ եւ Միքայէլ Հրեշտակապետաց տօնին առթիւ, Միքայէլեան եւ Անանեան գեր– դաստանի ննջեցեալներուն յիշատակին, փոխան հոգեհանգիստի :

×

Տիկին Գարայեան եւ զաւակը Ժան Գա– րայեան կը նուիրեն քսան Ն. Ֆ. Հայ Կարմիր Խաչի Օղափ. կայանին, ողբ. Բարսեղ Տամլամեանի յիշատակին :

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ

ՄԱՐՏ 18ԻՆ

ԱԶԴ ՏՈՒՈՂՆԵՐՈՒ

## ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Յառաջի վարչութիւնը ջերմապէս կը խնդրէ իր յաճախորդներէն որ հեռաձայ– նով ազդ. չտան :

Թիւրիմացութեանց եւ ժամավաճառու– թեանց առաջքն առնելու համար, վար – չութիւնը միայն ԳՐԱՒՈՐ ազդեր կ'ըն – դունի :

## ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Իսիի Խանա – սոր խումբի ղրադարանը բաց է Երեք – շաբթի օրերը, ժամը 9էն սկսեալ, Խրիմ– եան վարժարանը, 2 Րիւ տը լա Տէֆանս: Հայերէն եւ ֆրանսերէն ընտրուած գիր– քեր :

## ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ

Քառասնամեայ Յոբելեանական Փառատօնը Սորպոնի Մեծ Ամփիթատրոնին մէջ : Կիրակի, 6 Մայիս 1962, ժամը 14ին:

Հայ Կարմիր Խաչի Տարեկան Ցերեկոյթ պարահանդէսը, Կիրակի, Յունուար 28, ժամը 16 – 24, Ամպասատէօրի սրահին մէջ:

×

Հ. Բ. Ը. Մ. Լիոնի մասնաճիւղին տա– րեկան պարահանդէսը Շաբաթ երեկոյ 16 Դեկտեմբեր :

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Նոր շրջանի բացման գեղարուեստա – կան ցերեկոյթը տեղի պիտի ունենայ Դեկտեմբեր 17ին, Մշակոյթի Տան մէջ, Կիրակի ժամը 16ին: Կը խնդրուի նկատի ունենալ այս թուականը: Ման – րամասնութիւնները յառաջիկային :





ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Կապոյտ խաչի Փարիզի մասնաճիւղի տարեկան պարահանդէսը՝

ՅՈՒՆՈՒԱՐ 6ԻՆ

Լիւթէսիայի մէջ :

×

## ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ

Փարիզի շրջանի տարեկան ցերեկոյթը, ԿԻՐԱԿԻ, 4 ՄԱՐՏ, 1962 կէսօրէ վերջ ժամը 14.30ին, Սալ տը լա Շիմի :

×

Պատրաստուեցէք Շաւիլի եկեղեցւոյ տարեկան պարահանդէսին, Նոյեմբեր 26ին: Մանրամասնութիւնները յաջոր – դով:

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Նոյեմբեր 19ին, այս Կիրակի կէսօրէ վերջ:

Կը խօսի Ընկ. Խ. ՄԿՐՏԻՉԵԱՆ :

Գեղարուեստական բաժին :

ԼՈՆՏՈՆԻ ՄԷՋ

Դեկտեմբեր 3ին:

Կը խօսի Ընկ. ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ :

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Շաւիլի դպրոցին ի նպաստ տրուելիք պարահանդէսը Դեկտեմբեր 3ին, ման – րամասնութիւնները յաջորդաբար :

×

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Բ. Ը. Մ. Հայուհեաց մասնաճիւղին տարեկան պարահանդէսը՝ ԴԵԿՏԵՄԲԵՐ 16ԻՆ, ՇԱԲԱԹ:

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Րաֆֆի խումբի ժողովը այս Հինգշաբթի երեկոյեան ժա– մը 21ին: Մշակոյթի Տան մէջ :

ԿՐԸՆՈՊԼԸ.— Ստիպողաբար ժողովի կը հրաւիրուին, Կրընոպլի, Լանսէյի եւ Ռընաժի բոլոր ընկերները, 18 Նոյեմբեր, Շաբաթ գիշեր, սովորական հաւաքատե – ղին :

Ներկայ կ'ըլլան Կ. Կ.ի ներկայացու – ցիչները:

ԳՐԱԿԱՆ ՀԱՄԵՐԳ
ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

## ՍԱՐԳԻՍ ՊՕՂՈՍԵԱՆ

Եօթներորդ պտոյտ հայ գրականու – թեան պարտէզին մէջ,

« Միջնադարեան գանձեր »

Նոյեմբեր 20, Երկուշաբթի ժամը 21.15ին, Սալ Շոփէն – Փլէյէլ :

Կը մասնակցի՝ ՕՐ. ՇՈՒՇԱՆԻԿ ՄԻԼ – ՏՈՆԵԱՆ (տաւղահար) :

Տոմսերու համար դիմել Բալուեան գը– րատուն, 43, Ռիւ Ռիշէ:

Գին՝ 3, 5 եւ 7 Ն. Ֆ.:





## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազ – դերու համար են, չորրորդ էջը :

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է :

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան :

Տէր եւ Տիկին Հայկազ Պէզազեան, Տէր եւ Տիկին Վահագն Պէզազեան, Տէր եւ Տիկին Վաղարշակ Տէր–Վարդանեան եւ զաւակները (Մարսէյլ), Այրի Տիկին Հ. Բաղդասարեան եւ զաւակը Վահագն, Այրի Տիկին Ս. Զաքարեան եւ զաւակները (Պոլիս), Այրի Տիկին Ս. Զաքարեան, Տէր եւ Տիկին Զ. Զաքարեան եւ զաւակները (Ցիւրիխ), Այրի Տիկին Գ. Պետրոսեան եւ աղջիկը (Լոս – Անճըլըս), Տէր եւ Տիկին Պետրոսեան (Շիքակօ), Տէր եւ Տիկին Ա. Պէզազեան եւ զաւակները (Պոլիս), Տէր եւ Տիկին Գ. Պէզազեան (Ֆիլատելֆիա), Տէր եւ Տիկին Գաբիկ Շալճեան եւ զաւակները (Մարսէյլ), Տէր եւ Տիկին Ն. Պախթիարեան, ինչպէս նաեւ Զաքարեան (Հայաստան), Շալճեան եւ Տէր – Վարդանեան ընտանիքները ցաւով կը ծանուցանեն իրենց մօր, մեծ մօր, քրոջ, հօրաքրոջ եւ ազգականին՝

ՆՈՒԱՐԴ ՊԷԶԱԶԵԱՆԻ
(Ծնեալ Զաքարեան)

մահը, որ տեղի ունեցաւ Նոյեմբեր 12ին, ժամը 23ին, յետ կարճատեւ հիւանդութեան:

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ այս Չորեքշաբթի ժամը 14ին, իր բնակարանը, 50 Րիւ Քարնօ, Մոնթրէօյ, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի տեղւոյն գերեզմանատունը:

Մահազդ չստացողներէն կը խնդրուի, ներկայս իբրեւ այդ նկատել:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Մաքրուհի Տէօքմէճեան եւ զաւակները՝ Արփինէ եւ Յովնէ կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, այս Կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին իրենց ամուսնոյն եւ հօր՝

ՍԱՐԳԻՍ ՏԷՕՔՄԷՃԵԱՆԻ

մահուան Բ. տարեդարձին, ինչպէս նաեւ Տէօքմէճեան և Մարկոսեան գերդաստաններու համայն ննջեցելոց հոգւոյն ի յիշատակ:

Կը հրաւիրուին ողբացեալներուն յիշատակը յարգողները:

## ՆՈՒԷՐ

Արշակ Պալըրճեանի մահուան առթիւ, «Փոխան ծաղկեպսակի», Դպրոցասէր Տիկնանց վարժարանին կը նուիրեն .— Տիկ. Վարդապետեան՝ 10 Ն. Ֆ., Տէր եւ Տիկ. Կարպիս Պալեան՝ 10 Ն. Ֆ.:

(Ստանալ «Յառաջ»էն):

×

Փոքրիկն Գլօտ Տէր – Ղուկասեան իր մեծ հայրիկին՝ Համբարձում Տէր–Ղուկասեանի յիշատակին տասը Ն. Ֆ. կը նուիրէ Ֆ. Կ. Խաչի Անկէնի մասնաճիւղին, Մեռելոցի առթիւ:

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Շաւիլի դպրոցին ի նպաստ տրուելիք պարահանդէսը Դեկտեմբեր 3ին, մանրամասնութիւնները յաջորդաբար:

×

ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ
ՄԱՐՏ 18ԻՆ



Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Նոր շրջանի բացման դեղարուեստական ցերեկոյթը տեղի պիտի ունենայ Դեկտեմբեր 17ին, Մշակոյթի Տան մէջ, Կիրակի ժամը 16ին: Կը խնդրուի նկատի ունենալ այս թուականը: Մանրամասնութիւնները յառաջիկային:







Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Նոյեմբեր 19ին, այս Կիրակի կէսօրէ վերջ:

Կը խօսի Ընկ. Խ. ՄԿՐՏԻՉԵԱՆ:

Գեղարուեստական բաժին:

ԼՈՆՏՈՆԻ ՄԷՋ

Դեկտեմբեր 3ին:

Կը խօսի Ընկ. ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ:

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

Այս Կիրակի ժամը 10·30ին հանդիսաւոր պատարագ Փերրոնիա Հիւանեանի հոգւոյն համար, անոր մահուան տարելիցին առթիւ:

Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ ու այս ազդը իբր հրաւէր նկատել:

Երկուշաբթի 20 Նոյեմբեր, ժամը 16·30ին ձայնաւոր պատարագ Անթիլիի Հայ ծերանոցին մէջ:

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Րաֆֆի խումբի ժողովը այս Հինգշաբթի երեկոյեան ժամը 21ին: Մշակոյթի Տան մէջ:

ԿՐԸՆՈՊԼԸ.— Ստիպողաբար ժողովի կը հրաւիրուին, Կրընոպլի, Լանսէյի եւ Ռընաժի բոլոր ընկերները, 18 Նոյեմբեր, Շաբաթ գիշեր, սովորական հաւաքատեղին:

Ներկայ կ'ըլլան Կ. Կ.ի ներկայացուցիչները:









## ՀԱՅ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ

ՓԱՐԻԶԻ ՏԻԿՆԱՆՑ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԻՆ

ՏԱՐԵԿԱՆ ԲԱՐԵՆՊԱՏԱԿ ՎԱՃԱՌՔԸ

Շաբաթ, Դեկտեմբեր 2էն, Կիրակի, իրիկուն Դեկտեմբեր 10

Այս տարի, յաւելեալ նոր բաժին մը՝

ԶՈՒՏ ՀԱՅԿԱԿԱՆ

Ուր պիտի ներկայացուին հայ արուեստագէտներու զանազան գործերը:

ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ ՈՐԲԵՐՈՒ ՕԳՆ. ՄԱՐՄՆԻ

## ՏԱՐԵԿԱՆ ՀԱՆԴԷՍԸ

Կիրակի, Դեկտեմբեր 3ին, ժամը 17էն կէս գիշեր, Կրան Օթէլի շքեղ սրահներուն մէջ, 12, B . des Capucines

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ՝ Պ. ԿԱՐԱՊԵՏ ՅԱԿՈԲԵԱՆԻ

Երկու նուագախումբ, հաճելի գեղարուեստական բաժին:

Մուտք 6 Ն. Ֆ., իրենց քարթը ներկայացնող ուսանողներուն կէս գին:

Կը խնդրուի կանխաւ ապահովել սեղանները:

WAG. 38-54

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են, չորրորդ էջը:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Աննիկ Պաղըրճեան, աղջիկը՝ Արմենուհի Պաղըրճեան, Պաղըրճեան եղբարք եւ ընտանեկան պարագաները, շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, հեռագրով, գրաւոր, ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր, եղբօր եւ ազգականին

ԱՐՇԱԿ ՊԱՂԸՐՃԵԱՆԻ

ողբալի մահուան առթիւ: Շնորհակալութիւններ նաեւ Եկեղեցւոյ վարչութեան, Դպրոցասէր Տիկնանց վարժարանի խնամակալութեան, Ծնողաց միութեան, ուսուցչական կազմին եւ աշակերտութեան, Ֆ. Կապ. Խաչին, եւ «Յառաջ»ին:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկ. Խորէն Գրիգորեանէ, ի նպաստ օղափ. կայանին տասը Ն. Ֆ. փոխան ծաղկեպսակի Արշակ Պաղըրճեանի ցաւալի մահուան առթիւ:

×

Ֆ. Կ. Խաչի Պաննէօ Բաշանի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Այրի Տիկին Արշալոյս Սարգիսեանէ 40 Ն. Ֆ. Մեռելոցի առթիւ, իրենց ողբացեալ ընտանեաց՝ Իգնաբեր եւ Նշան Սարգիսեանի, Վեհինէ եւ Բարթամ Պասմաճեանի յիշատակին:

## ՆՈՒԷՐ

Տիկին Սաթենիկ Տէր-Դաւթեանի կողակցի մահուան առթիւ, Տիկին Աննիկ Սարաճեան երեսուն Ն. Ֆ. կը նուիրէ Ֆ. Կ. Խաչի Անկէնի մասնաճիւղին:

### ՓՈԽԱՆ ԾԱՂԻԿԻ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է.— Տէր եւ Տիկին Դաւիթ Տէր Գալուստեանէ յիսուն Ն. Ֆ., Տիկին Մարի Տէր Գալուստեանէ երեսուն եւ Տէր եւ Տիկին Յովհաննէս Տէր Գալուստեանէ 20 Ն. Ֆ., փոխան ծաղկի ողբացեալ Արշակ Պաղըրճեանի մահուան առիթով:

Տիկին Քէօշկերեանէ քսան Ն. Ֆ. ողբացեալ Տիկին Մուրատի յիշատակին: Տէր եւ Տիկին Կ. Խոչեանէ քսան, ողբացեալ Մ. Նարլեանի մահուան առթիւ: Տիկին Ա. Սարգիսեան 25, իր ամուսնոյն յիշատակին: Տիկին Պախթիարեան քսան, ողբացեալ Բ. Տամլամեանի յիշատակին: Տիկին Աբրահամեանէ եւ Տիկին Սաատէթեանէ 50ական Ն. Ֆ.:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը, Փարիզի շրջանի իր մասնաճիւղերով կը տօնէ՝

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Քաղէի սրահին մէջ, Դեկտեմբեր 28-ին, Հինգշաբթի օր:



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

### ՄԱՇՏՈՑԻ 1600ԱՄԵԱԿԸ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Մեսրոպի Մաշտոցի 1600ամեակին առթիւ կազմակերպուած է հրապարակային յիշատակի հանդէս մը, նախաձեռնութեամբ Հայ Ազգ. Միութեան եւ մասնակցութեամբ բոլոր հայ կազմակերպութիւններու, այս Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Սէրքլը Կաթոլիկի սրահը:

Կը նախագահէ Պ. Ս. ՍՈՒՔԻԱՍԵԱՆ

Կը խօսի ԲՐՈՖ. ԽԱՅԻԿԵԱՆ (Մարսէյլէն):

Օրուան պատշաճ գեղարուեստական բաժինով մը:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Մաքրուհի Տէօքմէճեան եւ զաւակները՝ Արփինէ եւ Յոլինէ կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, այս Կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին իրենց ամուսնոյն եւ հօր՝

ՍԱՐԳԻՍ ՏԷՕՔՄԷՃԵԱՆԻ

մահուան Բ. տարեդարձին, ինչպէս նաեւ Տէօքմէճեան և Մարկոսեան գերդաստաններու համայն ննջեցելոց հոգւոյն ի յիշատակ:

Կը հրաւիրուին ողբացեալներուն յիշատակը յարգողները:

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

Այս Կիրակի ժամը 10·30ին հանգստեան ձայնաւոր պատարագ Փերրոնիա Հիւսնեանի հոգւոյն համար, անոր մահուան տարելիցին առթիւ:

Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ ու այս ազդը իբր հրաւէր նկատել:

Երկուշաբթի 20 Նոյեմբեր, ժամը 16·30ին ձայնաւոր պատարագ Անտիլիի Հայ ծերանոցին մէջ:

### ԳՐԱԿԱՆ ՀԱՄԵՐԳ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

## ՍԱՐԳԻՍ ՊՕՂՈՍԵԱՆ

Եօթներորդ պտոյտ հայ գրականութեան պարտէզին մէջ,

« Միջնադարեան գանձեր »

Նոյեմբեր 20, Երկուշաբթի ժամը 21·15ին, Սալ Շոփէն-Փլէյէլ:

Կը մասնակցի՝ ՕՐ. ՇՈՒՇԱՆԻԿ ՄԻԼՏՈՆԵԱՆ (տաւղահար):

Տոմսերու համար դիմել Բալուեան գըրատուն, 43, Ռիւ Ռիշէ:

Գին՝ 3, 5 եւ 7 Ն. Ֆ.:





## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

### ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Այս Կիրակի կէսօրէ վերջ

Կը նախագահէ ընկ. ԳԷՈՐԳ ՔԻՐԷՃԵԱՆ

Կը խօսի Ընկ. Խ. ՄԿՐՏԻՉԵԱՆ:

Գեղարուեստական բաժին:

Կը մեներգէ Օր. Կարապետեան, Տէսինէն մասնաւոր հրաւիրուած, կ'արտասանեն Տիկին Ազատուհի Կիւմիւշեան, Խաչատուր Անտոնեան, Վահան Խաչատուրեան եւ ուրիշներ:

Ձոխ պիւֆէ եւ հաճելի անակնկալներ:

Մուտքը ազատ է:

### ԼՈՆՏՈՆԻ ՄԷՋ

Դեկտեմբեր 3ին:

Կը խօսի Ընկ. ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ:

ՃՇԴՈՒՄ.— Արշակ Պաղըրճեանի մահուան առթիւ Դպրոցասիրաց վարժարանին քսան Ն. Ֆ.ի նուէրը (տես Յառաջ՝ 15 Նոյեմբեր) եղած է Տիկին Վարդապետեանի կողմէ միայն:



# Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Րաֆֆի խումբի ժողովը այս Հինգշաբթի երեկոյեան ժամը 21ին: Մշակոյթի Տան մէջ:

ԿՐԸՆՈՊԼԸ.— Ստիպողաբար ժողովի կը հրաւիրուին, Կրընոպլի, Լանսէյի եւ Ռընաժի բոլոր ընկերները, 18 Նոյեմբեր, Շաբաթ գիշեր, սովորական հաւաքատեղին:

Ներկայ կ'ըլլան Կ. Կ.ի ներկայացուցիչները:

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Առնուվիլի Նոր Սերունդի խումբին, Սարսէլի մէջ:

Դեկտեմբեր 10ին, կը ներկայացուի՝

## ԱՇԽԱՐՀԻ ԴԱՏԱՍՏԱՆԸ







## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են, չորրորդ էջը:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապ. Խաչի Վիէնի վարչութիւնը խորին շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները ի նպաստ իր գպրոցներուն.— Տէր եւ Տիկին Մ. Մուրատեանէ յիսուն Ն. Ֆ. իրենց զաւկին՝ Վաղէկի ամուսնութեան առթիւ: Ընկերուհի Նըւարդ եւ Պ. Արշակ Ղուկոյեանէ քսան, Պ. Զաքարեայ Ղուկոյեանի վիրաբուժական յաջող գործողութեան առիթով: Ընկեր Ալ. Ալեքսանեանէ եւ Պ. Հայկազ Յակոբեանէ տասնական, ողբացեալ Օննիկ Ապպըլըզեանի մահուան առթիւ: Ընկերուհի Լուսաբեր Տոլմաճեանէ 10, իր չուտափոյթ ապաքինման առթիւ:

## ՆՈՒԷՐ

Ֆ. Կապ. Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղը յիսուն Ն. Ֆ. կը նուիրէ Մշակոյթի Տան, Սաթենիկ Տէր-Դաւթեանի մահուան առթիւ: (Ստանալ Յառաջէն):

×

Պ. Միսաք Հանէսեան եւ զաւակները իրենց կնոջ եւ մայրիկին՝

ԱՐՓԻՆԷ ՀԱՆԷՍԵԱՆԻ

(Ծնեալ Խաչիկեան)

մահուան վեցերորդ տարեդարձին առթիւ երեսուն Ն. Ֆ. կը նուիրեն Մոնմորանսիի ծերանոցին: (Ստանալ Յառաջէն):

ԱԶԴ ՏՈՒՈՂՆԵՐՈՒ

## ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Յառաջի վարչութիւնը ջերմապէս կը խնդրէ իր յաճախորդներէն որ հեռաձայնով ազդ չտան:

Թիւրիմացութեանց եւ ժամավաճառութեանց առաջքն առնելու համար, վարչութիւնը միայն ԳՐԱՒՈՐ ազդեր կ'ընդունի:

## ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Իսիի Խանասոր խումբի գրադարանը բաց է Երեքշաբթի օրերը, ժամը 9էն սկսեալ, Խրիմեան վարժարանը, 2 Րիւ տը լա Տէֆանս: Հայերէն եւ ֆրանսերէն ընտրուած գիրքեր:





Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ՄԱՇՏՈՑԻ 1600ԱՄԵԱԿԸ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Մեսրոպի Մաշտոցի 1600ամեակին առթիւ կազմակերպուած է հրապարակային յիշատակի հանդէս մը, նախաձեռնութեամբ Հայ Ազգ. Միութեան եւ մասնակցութեամբ բոլոր հայ կազմակերպութիւններու, այս Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Սէրքըլ Կաթոլիկի սրահը:

Կը նախագահէ Պ. Ս. ՍՈՒՔԻԱՍԵԱՆ

Կը խօսի ՓՐՈՖ. ԽԱՅԻԿԵԱՆ (Մարսէյլէն):

Օրուան պատշաճ գեղարուեստական բաժինով մը:

## ԿՈՉ ՇԱՒԻԼԻ ՀԱՅՐԵՆԱԿԻՑՆԵՐՈՒՆ

Շավիլի հայ գաղութը միշտ առաջին գծի վրայ գտնուած է ամէն անգամ որ կոչ եղած է իր ազգասիրական զգացումներուն, ու բնաւ չէ սակարկած իր սրտաբուխ նուէրը, երբ իրեն դիմուած է բարենպատակ ձեռնարկի մը առթիւ:

Այս անգամ կարգ մը ազգայիններ ի մի հաւաքուելով, որոշեցինք հանդանակութեան մը ձեռնարկել, ի նպաստ Փարիզի Հայ Մշակոյթի Տան Թէքիրեան սրահին կեդր. ջերմութեան հաստատման աշխատանքներուն մեր գաղութին մասնակցութիւնը ապահովելու եւ առ այդ կազմեցինք հանգանակիչ յանձնախումբ մը հետեւեալ ազգայիններէ.— Տիկիններ՝ Սարաֆեան Անոյշ, Շմաւոնեան, Կիւլեան, Պ. Պ. Նշան Հայթայեան, Սիրուն Պարոնեան, Գրիգոր Փափազեան, Մովսէս Տէմիրճեան, Ս. Մկրտիչեան, Կղեմէս Օհանեան, Լ. Պետիկեան:

Ներկայիս կոչ կ'ընենք Շավիլի Հայութեան որպէսզի երբ իրենց դիմում կատարուի յանձնախումբիս կողմէ, առատաձեռնութեամբ ընդառաջ երթան այս հանգանակութեան հերոս Ս. Թէքիրեանի յիշատակին նուիրուած սրահին իրենց մասնակցութիւնը արժանավայել կերպով բերած ըլլալու գոհունակութեամբ:

Շավիլի Հանգ. Յանձնախումբ

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Ալֆորվիլի դպրոցին ի նպաստ կրթական մարմնին տարեկան պարահանդէսը՝ Դեկտեմբեր 24ին:



## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

ԿԻՐԱԿԻ, ՆՈՅԵՄԲԵՐ 26ԻՆ, կէսօրէ վերջ

Կը նախագահէ ընկ. ԳԷՈՐԳ ՔԻՐԷՃԵԱՆ

Կը խօսի Ընկ. Խ. ՄԿՐՏԻՉԵԱՆ:

Գեղարուեստական բաժին:

Կը մեներգէ Օր. Կարապետեան, Տէսինէն մասնաւոր հրաւիրուած, կ'արտասանեն Տիկին Ազատուհի Կիւմիւշեան, Խաչատուր Անտոնեան, Վահան Խաչատուրեան եւ ուրիշներ:

Ծոփ պիւֆէ եւ հաճելի անակնկալներ:

Մուտքը ազատ է:

ԼՈՆՏՈՆԻ ՄԷՋ

Դեկտեմբեր 3ին:

Կը խօսի Ընկ. ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ:

## ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԻՒՆ

Հայ Գրողներու Միութեան անդամները կը հրաւիրուին ընդհ. անդամական ժողովի այս Կիրակի, ժամը 16ին Ազգ. Տան մէջ:

Օրակարգ.— Վարչութեան հրաժարման հարց եւ նոր վարչութեան ընտրութիւն:

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ

ՄԱՐՏ 18ԻՆ

## Հ. Յ. Դ.

ԿՐԸՆՈՊԼ.— Ստիպողաբար ժողովի կը հրաւիրուին, Կրընոպլի, Լանսէյի եւ Ռընաժի բոլոր ընկերները, 18 Նոյեմբեր, Շաբաթ գիշեր, սովորական հաւաքատեղին:

Ներկայ կ'ըլլան Կ. Կ.ի ներկայացուցիչները:

ԳՐԱԿԱՆ ՀԱՄԵՐԳ

ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

## ՍԱՐԳԻՍ ՊՕՂՈՍԵԱՆ

Եօթներորդ պտոյտ հայ գրականութեան պարտէզին մէջ,

« Միջնադարեան գանձեր »

Նոյեմբեր 20, Երկուշաբթի ժամը 21·15ին, Սալ Շոփէն – Փլէյէլ:

Կը մասնակցի՝ ՕՐ. ՇՈՒՇԱՆԻԿ ՄԻԼՏՈՆԵԱՆ (թաւջութակ):

Տոմսերու համար դիմել Բալուեան գըրատուն, 43, Ռիւ Ռիշէ:

Գին՝ 3, 5 եւ 7 Ն. Ֆ.:

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Մարսէյլի «Ռոստոմ» խումբի պարահանդէսը, Դեկտեմբեր 9ին, Ալհամպրայի մէջ:







## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են, չորրորդ էջը:

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է:

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Դպրոցասէրը շնորհակալութեամբ ըստացած է Տէր եւ Տիկին Կարպիս Պալեանէ 20 Ն. Ֆ., Տիկին Եռիքարտաշեանէ 10, փոխան ծաղիկի ողբացեալ Արշակ Պաղըրճեանի մահուան առիթով :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Վասիկ Տէր-Դաւթեան եւ զաւակները, Տոքթ. եւ Տիկին Ռուբէն Տէր-Դաւթեան եւ զաւակը շնորհակալութիւն կը յայտնեն Կաթ. Պատուիրակ Սերովբէ Եպիսկոպոս Մանուկեանի եւ բոլոր անոնց որոնք անձամբ, հեռագրով, նամակով, մամուլով կամ փոխան ծաղկեպսակի նուիրատուութեամբ մասնակցեցան իրենց սուգին, իրենց սիրելի մայրիկին եւ մեծ մայրիկին՝

ՍԱԹԵՆԻԿ ՏԷՐ-ԴԱՒԹԵԱՆԻ մահուան առթիւ :

### ՏԱՐԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Սերաստիոյ Դաւրայի Հայր. Միութեան, Դեկտեմբեր 17ին, ժամը 15ին, Խրիմեան վարոցը (Իսի) :

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Արնուվիլի Նոր Սերունդի խումբին, Սարսէլի մէջ :

Դեկտեմբեր 10ին, կը ներկայացուի՝

## ԱՇԽԱՐՀԻ ԴԱՏԱՍՏԱՆԸ

## ՆԱՆՍԷՆԵԱՆ ՀԱՅԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Գաղթականաց հայկական բաժնի գրրասենեակը անգամ մը եւս կը յիշեցնէ իր «հպատակներուն» թէ ինքնութեան թուղթին կողքին ՊԱՐՏԱՒՈՐԻՉ է գաղթականի հանգամանքը հաստատող վկայականը՝

Certificat de Réfugié

Այս թուղթը պէտք է նորոգուի ամիջապէս որ ի զօրու ըլլալէ կը դադրի: Նորոգութեան համար ձեւակերպութիւնները այն են ինչ որ էին առաջին անգամ զայն ստանալու համար, այսինքն.— Ազգութեան թուղթը, մէկ պատկեր, անձագրի (Քարթ տ'Իտանթիթէ) վաւերացուած քոփին եւ 1070 Ֆր. (ձրի տընտեսապէս տկարներուն համար) :

Այս վկայականը կը նորոգուի այն թըւականէն երբ դադրած է ի զօրու ըլլալէ, օրինակ.— եթէ թուղթը վերջացած է.— 1959 Հոկտ. 15, կը նորոգուի 1959 ՀՈԿՏ. 15էն, եւ ոչ ներկայացուած օրէն :

Անգամ մը եւս կը շեշտենք թէ այս թուղթը ՊԱՐՏԱՒՈՐԻՉ է որեւէ պարագայի :

Գաղթականաց գրասենեակը բաց է ամէն առտու (բացի Շաբաթէն) ժամը 9էն 12.30 :

23, Rue La Pérouse (Métro Kleber)

Հարաւային Ֆրանսայի համար՝

26 Rue des Convalescents, Marseille



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

### ԱԶԳ. ՏՈՒՈՂՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

—o—

Յառաջի վարչութիւնը ջերմապէս կը խնդրէ իր յաճախորդներէն որ հեռաձայնով ազդ. չտան :

Թիւրիմացութեանց եւ ժամավաճառութեանց առաջքն առնելու համար, վարչութիւնը միայն ԳՐԱՒՈՐ ազդեր կ'ընդունի :

КԻՐԱԿԻ 17 ԴԵԿՏԵՄԲԵՐ

ժամը 16էն 22

Սամուէլ Մուրատեան վարժարանի թատերասրահին մէջ

## ԿԱՂԱՆԴԻ ԾԱՌԻ

Հանդէս

Ծնողաց Միութեան կողմէ պատրաստուած

### ՀԱՅԵՐԷՆԻ ԴԱՍԸՆԹԱՑՔ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղի Հինգշաբթի օրուան դասընթացքը տեղի կ'ունենայ ամէն Հինգշաբթի ժամը 14էն 16, Մշակոյթի տունը՝

17, Rue Bleue, Paris (9e)

ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ

## ՑԵՐԵԿՈՅԹ

ՄԱՐՏ 11ԻՆ

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ



## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

### ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

ԿԻՐԱԿԻ, ՆՈՅԵՄԲԵՐ 26ԻՆ, կէսօրէ վերջ

Կը նախագահէ ընկ. ԳԷՈՐԳ ՔԻՐԷՃԵԱՆ

Կը խօսի Ընկ. Խ. ՄԿՐՏԻՉԵԱՆ :

Գեղարուեստական բաժին :

Կը մեներգէ Օր. Կարապետեան, Տէսինէն մասնաւոր հրաւիրուած, կ'արտասանեն Տիկին Ազատուհի Կիւմիւշեան, Խաչատուր Անտոնեան, Վահան Խաչատուրեան եւ ուրիշներ :

Ձոխ պիւֆէ եւ հաճելի անակնկալներ :

Մուտքը ազատ է :

### ԼՈՆՏՈՆԻ ՄԷՋ

Դեկտեմբեր 3ին :

Կը խօսի Ընկ. ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ :

### Կ'ՈՒԶՈՒԻ

16-17 տարեկան սկսնակ տաքթիլօ օրիորդ մը :

Անձամբ ներկայանալ Թերթիս վարչութեան :

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ

ՄԱՐՏ 18ԻՆ

×

Ալֆորվիլի դպրոցին ի նպաստ կրթական մարմնին տարեկան պարահանդէսը՝ Դեկտեմբեր 24ին :

×

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ

Քառասնամեայ Յոբելենական Փառատօնը Սորպոնի Մեծ Ամփիթատրոնին մէջ : Կիրակի, 6 Մայիս 1962, ժամը 14ին :

Հայ Կարմիր Խաչի Տարեկան Ցերեկոյթ պարահանդէսը, Կիրակի, Յունուար 28, ժամը 16-24, Ամպասատէօրի սրահին մէջ :

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Մարսէյլի «Ռոստոմ» խումբի պարահանդէսը, Դեկտեմբեր 9ին, Ալհամպրայի մէջ :

×

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը, Փարիզի շրջանի իր մասնաճիւղերով կը տօնէ՝

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Քատէի սրահին մէջ, Դեկտեմբեր 28-ին, Հինգշաբթի օր :

×

Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղի տարեկան պարահանդէսը՝

ՅՈՒՆՈՒԱՐ 6ԻՆ

Լիւթէսիայի մէջ :

×

## ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ

Փարիզի շրջանի տարեկան ցերեկոյթը, ԿԻՐԱԿԻ, 4 ՄԱՐՏ, 1962 կէսօրէ վերջ ժամը 14.30ին, Սալ տը լա Շիմի :

×

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Բ. Ը. Մ. Հայունեաց մասնաճիւղին տարեկան պարահանդէսը՝ ԴԵԿՏԵՄԲԵՐ 16ԻՆ, ՇԱԲԱԹ :

×

Հ. Բ. Ը. Մ. Լիոնի մասնաճիւղին տարեկան պարահանդէսը Շաբաթ երեկոյ 16 Դեկտեմբեր :

### Կ'ՈՒԶՈՒԻ

Քուփէօզ մը պոնեթրի-թրիքոյի համար :

ԴԻՄԵԼ.—

PARIS-CALIFORNIE

16, Rue Sainte-Cécile, Paris 9e

TAI. 64-06

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ԵՒ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Շաւիլի Կրօն. Ընկերակցութեան կողմէ եւ հովանաւորութեամբ Կաթ. Պատուիրակ Գերշ.

ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

Կիրակի, Դեկտեմբեր 3, ժամը 15ին Շաւիլի քաղաքապետարանին սրահին մէջ

Rue Stalingrad. CHAVILLE

Կը ներկայացուի, ղեկավարութեամբ Ա. ԳՄԲԷԹԵԱՆի

« ՄԻՋԻՆ ԳԻՒՂԻ ԲԺԻՇԿԸ »

Զաւեշտ 3 արար, Մոլիէրի «Ակամայ բժիշկ»էն հայացուած Գ. Վահանի կողմէ:

Երգ, արտասանութիւն եւ պար դպրոցի աշակերտներուն կողմէ :

ժամը 20էն ետք, պարահանդէս.—

ORCHESTRE RAGO NURIAS

ՄՈՒՏՔ 4 Ն. Ֆ. ՊՈՒՖԷ



## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են, չորրորդ էջը :

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է :

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել վարչութեան :

## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սե-րունդի Մարսէյլի «Ռոստոմ» խումբի կողմէ,

ԱԼՀԱՄՊՐԱՅԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

Դեկտեմբեր 9ին, Շաբաթ երեկոյ, ժամը 22էն մինչեւ լոյս:

Մասնակցութեամբ հանրածանօթ վի-ղահար ՄԱՐՍԷԼ ՓԵՐԷՆԻ եւ իր նուա-գախումբին ու երգչուհի ՀԻԿԷԹ ԼԸ-ՔԱՅԻ:

### ՏԱՐԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Սեբաստիոյ Դաւրայի Հայր. Միու-թեան, Դեկտեմբեր 17ին, ժամը 15ին, Խրիմեան դպրոցը (Իսի):

### ԺՈՂՈՎ – ԹԷՅԱՍԵՂԱՆ

Ֆ. Կ. Խաչի Մարսէյլի մասնաճիւղի վարչութիւնը բաժակ մը թէյի շուրջ ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ան-դամուհիները, Երեքշաբթի (Նոյեմբեր 28) կէսօրէ վերջ ժամը 3ին, Քափէ Նո-այլի սրահը: Բոլոր ընկերուհիներու ներ-կայութիւնը անհրաժեշտ է: Կարեւոր օ-րակարգ:

КԻՐԱԿԻ 17 ԴԵԿՏԵՄԲԵՐ
ժամը 16էն 22
Սամուէլ Մուրատեան վարժարանի թատերասրահին մէջ
ԿԱՂԱՆԴԻ ԾԱՌԻ
Հանդէս
Ծնողաց Միութեան կողմէ պատրաստուած

### ԺԵՐԱՆԵԱՆ
**GALERIE GANZONI**
**3, Rue de la Confédération**
**GENÈVE**
ՄԻՆՉԵՒ ՆՈՅԵՄԲԵՐ 30

#### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Լիոնի «Սիա-մանթօ» խումբի ընտանեկան խնջոյքը, տեղի պիտի ունենայ Դեկտեմբեր 10ին, էթուալի վերնայարկը, (Փլաս տիւ Փոն):

×

### ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ
ՄԱՐՏ 18ԻՆ

×

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը, Փա-րիզի շրջանի իր մասնաճիւղերուվ կը տօնէ՝

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Քառէի սրահին մէջ, Դեկտեմբեր 28-ին, Հինգշաբթի օր:

×

Ալֆորվիլի դպրոցին ի նպաստ կրթա-կան մարմնին տարեկան պարահանդէսը՝ Դեկտեմբեր 24ին:



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

## ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՕՐԸ

ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

ԿԻՐԱԿԻ, ՆՈՅԵՄԲԵՐ 26ԻՆ, կէսօրէ վերջ

Կը նախագահէ ընկ. ԳԷՈՐԳ ՔԻՐԷՃԵԱՆ

Կը խօսի Ընկ. Խ. ՄԿՐՏԻՉԵԱՆ:

Գեղարուեստական բաժին:

Կը մեներգէ Օր. Կարապետեան, Տէսի-նէն մասնաւոր հրաւիրուած, կ'արտասա-նեն Տիկին Ազատուհի Կիւմիւշեան, Խա-չատուր Անտոնեան, Վահան Խաչատուր-եան եւ ուրիշներ:

Ծով պիւֆէ եւ հաճելի անակնկալներ:

Մուտքը ազատ է:

### ԹԷՅԱՍԵՂԱՆ
### Ի ՊԱՏԻՒ
### ԱՆԴՐԱՆԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆԻ

Նախաձեռնութեամբ համակիր բարե-կամներու յանձնախումբի մը:

Հայաստանէն իր նոր վերադարձին առ-թիւ: Հինգշաբթի (Նոյեմբեր 30) իրի-կուն ժամը 21ին, Լիւթեսիայի սրահը:

43, Bld. Raspail
Métro Sèvres-Babylone

Գեղարուեստական բաժին:
Ծախքերու մասնակցութիւն 5 Ն. Ֆ.:

### ՎԱՐԱԳԱՅ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

Այս Կիրակի Առնուվիլի Վարագայ Ս. Խաչ եկեղեցւոյ մէջ, իր անդրանիկ պա-տարագը կը մատուցանէ նորընծայ

Տ. ՄԱՇՏՈՑ ՔՀՆՅ. ԹԻՒՖԷՆՔՃԵԱՆ

Նախագահութեամբ Կաթ. պատուիրակ Գերաշնորհ Տ. ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱ-ՆՈՒԿԵԱՆԻ:

Սկիզբ ժամերգութեան ժամը 9, Ս. պատարագ ժամը 10.15:

Հոգեհանգիստ Տէր ԱԴԴԷ ՔՀՆՅ. ՓԱՅԼԱԿԵԱՆԻ յիշատակին:

Յաւարտ Ս. Պատարագի տեղի կ'ունե-նայ մասնաւոր ճաշ, որուն կը հրաւիր-ուին փափաքողներ:

Ճաշարան՝ Փըթի Շաւէօր: Ճաշագին՝ 15 Ն. Ֆ.:

Արձանագրուիլ Պ. Նիկողոսեանի մօտ՝ հեռաձայն ԿՈՆԷՍ 446:

### ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԹԷՅԱՍԵՂԱՆ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Պանեէօ Քաշանի մասնաճիւղի կողմէ: Այս Կիրա-կի, ժամը 15ին, ընկերուհի Մալխասեանի բնակարանը, 21 Սանթիէ տը Լա Ռու (Պանեէօ):

Գեղարուեստական սիրուն անակնկալ-ներ: Հաճելի մթնոլորտ:

Կը հրաւիրուին բոլոր ընկերուհիներն ու համակիրները, Փորթ տ'Օրլէանէն առնել 188 թիւ օթօպիւսը (Սօ – Լէպլաժի գացող) եւ իջնել Լէ Պլէն:



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՀԱՄԱԽԱՐԲ. Միութեան Մարսէյլի մասնաճիւղին ընդհ. անդամական ժողո-վը այս Շաբաթ ժամը 21ին, սովորական հաւաքատեղին:

×

ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի վար-չութեան ժողովը այս Շաբաթ, ժամը 16-ին, Մշակոյթի Տան մէջ:

Կարեւոր օրակարգ:

## Հ. Յ. Դ.

ԿՐԸՆՈՊԼԸ.— Ստիպողաբար ժողովի կը հրաւիրուին, Կրընոպլի, Լանսէյի եւ Ռընաժի բոլոր ընկերները, 25 Նոյեմբեր, Շաբաթ գիշեր, սովորական հաւաքատե-ղին:

Ներկայ կ'ըլլան Կ. Կ.ի ներկայացու-ցիչները:

ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ ՈՐԲԵՐՈՒ ՕԳՆ. ՄԱՐՄՆԻ

## ՏԱՐԵԿԱՆ ՀԱՆԴԷՍԸ

Կիրակի, Դեկտեմբեր 3ին, ժամը 17էն կէս գիշեր, Կրան Օթէլի շքեղ սրահ-ներուն մէջ, **12, Bd. des Capucines**

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ՝ Պ. ԿԱՐԱՊԵՏ ՅԱԿՈԲԵԱՆԻ

Երկու նուագախումբ, հաճելի գեղարուեստական բաժին:

Մուտք 6 Ն. Ֆ., իրենց քարթը ներկայացնող ուսանողներուն կէս գին:

Կը խնդրուի կանխաւ ապահովել սեղանները:

WAG. 38-54

## ՀԱՅ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ

ՓԱՐԻԶԻ ՏԻԿՆԱՆՑ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԻՆ

### ՏԱՐԵԿԱՆ ԲԱՐԵՆՊԱՏԱԿ ՎԱՃԱՌՔԸ

Շաբաթ, Դեկտեմբեր 2էն, Կիրակի, իրիկուն Դեկտեմբեր 10

Բարեգործականի սրահներուն մէջ 11 Սքուար Ալպօնի, Մէթրօ Փասի

Այս տարի, յաւելեալ նոր բաժին մը՝

### ԶՈՒՏ ՀԱՅԿԱԿԱՆ

Ուր պիտի ներկայացուին հայ արուեստագէտներու զանազան գործերը:

Նկարներ, մանրանկարչութիւն, Ատլաս Հայաստանի պատմութեան եւ աշ-խարհագրութեան, գրագէտներու կողմէ ստորագրուած գիրքեր, սալեր, արեւել-եան ճաշերու հաւաքածոյ մը, եւն. եւն.:

ՀՈՆ ԿԸ ԳՏՆԷՔ ՆԱԵՒ

Մարգրիտներ, գոհարեղէնի տուփեր, ձայն-պատկերասփիւռ, թրանզիսթօր, մօլէգ եւ կոկորդիլոս պայուսակներ, ճամբորդութեան պայուսակներ, թրուս, ժերզէ հագուստներ, փարֆէօն, նայլըն գուլպայ, գրամեքենայ, փիլեր այր մար-դոց եւ կիներու համար, այր մարդոց շապիկ, մետաքսէ փողկապ, ֆանթէզի գոհարեղէններ, սեղանի սպասներ, խաղալիքներ եւն. եւն.:

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

*Րաֆֆի Խաչատուրեան յիսուն Ն. Ֆ. կը նուիրէ Մշակոյթի Տան, ողբացեալ Սաթենիկ Տէր Դաւթեանի մահուան քառասունքին համար :*

## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Մարսէյլի «Ռոստոմ» խումբի կողմէ ,*

*ԱԼՀԱՄՊՐԱՅԻ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ*

*Դեկտեմբեր 9ին, Շաբաթ երեկոյ, ժամը 22էն մինչեւ լոյս :*

*Մասնակցութեամբ հանրածանօթ փողահար ՄԱՐՍԷԼ ՓԵՐԷՆԻ եւ իր նուագախումբին ու երգչուհի ՀԻԿԷԹ ԼԸՔԱՅԻ :*

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

*Մինչեւ ԴԵԿՏԵՄԲԵՐ 31, մեր այն բոլոր բաժանորդները որոնք առկախ հաշիւներ ունին, համապատասխան հաշուեցոյցեր պիտի ստանան եւ Յառաջի հաշիւին վրայ* մանտա *մը, դիւրացնելու համար իրենց վճարումները :*

*Բոլոր այն բաժանորդները որոնք չեն պատասխաներ մեր դիմումին , թերթ պիտի չստանան Յունուար 1էն սկսեալ:*

*Անգամ մը եւս շնորհակալութիւն կը յայտնենք բոլոր պարտաճանաչ բաժանորդներուն, որոնք իրենց կանխիկ եւ կանոնաւոր վճարումներով կը դիւրացնեն Յառաջի վարչական գործը :*

*ՎԱՐՉՈՒԹԻՒՆ ՅԱՌԱՋԻ*

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ԵՒ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Շաւիլի Կրօն. Ընկեր ակցութեան կողմէ եւ հովանաւորութեամբ Կաթ. Պատրիարք Գերշ. ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

*Կիրակի, Դեկտեմբեր 3, ժամը 15ին Շաւիլի քաղաքապետարանին սրահին մէջ*

Rue Stalingrad. CHAVILLE

*Կը ներկայացուի, ղեկավարութեամբ Ա. ԳՄԲԷԹԵԱՆի*

*« ՄԻՋԻՆ ԳԻՒՂԻ ԲԺԻՇԿԸ »*

*Զաւեշտ 3 արար, Մոլիէրի «Ակամայ բժիշկ»էն հայացուած Գ. Վահանի կողմէ:*

Երգ, արտասանութիւն եւ պար դպրոցի աշակերտներուն կողմէ :

*ժամը* 20էն ետք, պարահանդէս .—

ORCHESTRE RAGO NURIAS

*ՄՈՒՏՔ 4 Ն. Ֆ.* *ՊԻՒՖԷ*

ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ ՈՐԲԵՐՈՒ ՕԳՆ. ՄԱՐՄՆԻ

## ՏԱՐԵԿԱՆ ՀԱՆԴԷՍԸ

Կիրակի, Դեկտեմբեր 3ին, ժամը 17էն կէս գիշեր, *Կրան Օթէլի* շքեղ սրահներուն մէջ, **12, B . d;s Capucines**

*ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ՝ Պ. ԿԱՐԱՊԵՏ ՅԱԿՈԲԵԱՆԻ*

*Երկու նուագախումբ , հաճելի գեղարուեստական բաժին :*

Մուտք 6 Ն. Ֆ., իրենց քարթը ներկայացնող ուսանողներուն կէս գին :

*Կը խնդրուի կանխաւ ապահովել սեղանները :*

WAG. 38-54

*ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ*

ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Ընկեր Ժ. Միրիճեանի կողմէ

*Նիւթ.—* ՕՐՈՒԱՆ ՀԱՐՑԵՐ:

*Այս Չորեքշաբթի, ժամը 21ին, Ահարոնեան խումբի սովորական հաւաքավայրը :*

*Կը հրաւիրուին բոլոր Նոր Սերնդականները եւ համակիրները :*

*ԹԷՅԱՍԵՂԱՆ Ի ՊԱՏԻՒ ԱՆԴՐԱՆԻԿ ԾԱՌՈՒԿԵԱՆԻ*

*Նախաձեռնութեամբ համակիր բարեկամներու յանձնախումբի մը :*

*Հայաստանէն իր նոր վերադարձին առթիւ: Հինգշաբթի (Նոյեմբեր 30) իրիկուն ժամը 21ին,* Լիւթեսիայի *սրահը :*

43, Bld. Raspail

Métro Sèvres-Babylone

*Գեղարուեստական բաժին :*

Ծախսերու մասնակցութիւն 5 Ն. Ֆ.:

ԿԻՐԱԿԻ 17 ԴԵԿՏԵՄԲԵՐ

ժամը 16էն 22

Սամուէլ Մուրատեան վարժարանի թատերասրահին մէջ

### ԿԱՂԱՆԴԻ ԾԱՌԻ

Հանդէս

Ծնողաց Միութեան կողմէ պատրաստուած

## Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Րաֆֆի խումբի ժողովը, այս Հինգշաբթի, Մշակոյթի Տան մէջ:*

*ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ*

*Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Լիոնի «Սիամանթօ» խումբի ընտանեկան խնջոյքը , տեղի պիտի ունենայ Դեկտեմբեր 10ին ,* էթուալի *վերնայարկը, (Փլաս տիւ Փոն) :*

×

### ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ

*ՄԱՐՏ 18ԻՆ*

×

*Ֆ. կ. Խաչի Շրջ. վարչութիւնը, Փարիզի շրջանի իր մասնաճիւղերով կը տօնէ՝*

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

*Քատէի սրահին մէջ, Դեկտեմբեր 28-ին, Հինգշաբթի օր :*

×

*Ալֆորվիլի դպրոցին ի նպաստ կրթական մարմնին տարեկան պարահանդէսը՝* Դեկտեմբեր 24ին :

ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

—

### ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

ՄԱՐՏ 11ԻՆ

*ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ*

*ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ*

*Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Արնուվիլի Նոր Սերունդի խումբին, Սարսէլի մէջ:*

*Դեկտեմբեր 10ին, կը ներկայացուի՝*

### ԱՇԽԱՐՀԻ ԴԱՏԱՍՏԱՆԸ

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

*ՅԱԿՈԲ ՏԷՐ-ՅԱԿՈԲԵԱՆ*

## ՊԱՐՏԻԶԱԿԸ ԽԱՏՈՒՏԻԿ

*Յաւելուածաբար՝* ՄԱՆՈՒՇԱԿ ԵՒ ԻՐ ՀԷՔԵԱԹՆԵՐԸ :

500 էջ

13 Hors-Texte

*Հասոյթը Փարիզի եկեղեցւոյ կըրթական մարմնին :*

Գին 12 Ն. Ֆ.

*Թղթատարի ծախքով* 13·40 Ն. Ֆ.

Արտասահման 4 տոլար :

*Դիմել՝*

Յառաջին

Հայ գրավաճառներուն

*Փարիզի եկեղեցին կամ Տպարան*

*ՏԷՐ - ՅԱԿՈԲԵԱՆ*

## ՇԱՀԱՆ ՇԱՀՆՈՒՐ

ՆԱՀԱՆՋԸ ԱՌԱՆՑ ԵՐԳԻ

Ա. Տպագրութիւն, 1929

Գին 7 Ն. Ֆր.

Դիմել ՅԱՌԱՋին

ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ

ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գիները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են, չորրորդ էջը :

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է :

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան :







Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise. PARIS (9e)

